Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 12 ՀՈՒՆԻՍ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 2—52—78։*



# ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ

Մ. ԿԵԼՋԵՎՍԿԻ

*Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը աշխարհի մի մեծագույն այգի-քաղաք է, հրաշալի պալատների քաղաք, որոնք բարձրանում են կանաչ ծառերի ու թփերի ծովի մեջ։*

*Ցուցահանդեսի 76 պավիլիոնում (չհաշված հատուկ և օժանդակ նշանակություն ունեցող 231 շենքերը) կա 350 դահլիճ։ Միայն խոշոր մոնումենտալ գեղանկարչական ստեղծագործությունների թիվը հասնում է 300-ի։ Նրա ձևավորման աշխատանքներին մասնակցում են մոտ 2 հազար 500 նկարիչ, որոնց թվում սովետական կերպարվեստի, գեղանկարչության, գրաֆիկայի, քանդակագործության խոշորագույն վարպետներ։ Սակայն ձևավորողների այդ մեծ քանակը ևս բավական չէ աշխատանքի հսկայական ծավալն ապահովելու համար։ Շուտով նրանց թիվը կհասցվի մոտ 4 հազար մարդու։*







Անցնելով կամարակապ գլխավոր մուտքից, մենք ոտք ենք դնում մի լայն ասֆալտապատ ծառուղի։ Այդ ծառուղու երկարությամբ ձգվում է պտղատու ծառերի և դեկորատիվ թփերի մի ամբողջ շարան, ուր տեղավորված է 14 շատրվան։

Ցուցահանդեսն ունի 207 հեկտար տերիտորիա։ Նրա յուրաքանչյուր անկյունում աշխատանքը եռում է։ Այգեգործները էտում են ծառերի ճյուղերը, աշխատողների մի ուրիշ խումբ ձևավորում է ափիզախոտի ապագա մարգերը։ Ներկարարները բենզատար ավտոմեքենայի վրա դրված կոմննկի օգնությամբ ներկում են ծառուղու երկու կողմում գտնվող սյուները, որոնք ունեն շատ ուրույն կառուցվածք։ Նրանցից յուրաքանչյուրը ձևավորվել է մի հսկայական հասկի ձևով, որը ունի մետաղե թևեր։ Այդ հասկի մեջ «հատիկներին» փոխարինում են կաթնագույն ապակե գնդեր, որոնց ներսում կան էլեկտրական լամպեր։

Ծառուղու վերջում 97 մետրանոց բարձրության վրա արևի ճառագայթների տակ ոսկու նման փայլում է ցուցահանդեսի գլխավոր պավիլիոնի երեք հարկանի մեծ շենքի աստղը։ Պավիլիոնի կողքի պատերից դեռ փայտամածները չեն հանված, սակայն



արդեն այժմ կարելի է դատել այդ կառուցվածքի հիանալի ճարտարապետության մասին։ Նրա գլխավոր մուտքի վրա դրոշների ֆոնի վրա դրված են Սովետական Միության Գերբը և միութենական 16 ռեսպուբլիկաների գերբերը։

Գլխավոր պավիլիոնի առաջ հսկայական հրապարակի երկու կողմերում տեղավորված են լինելու միութենական բոլոր ռեսպուբլիկաների պավիլիոնները և Ռուսաստանյան ֆեդերացիայի 12 զոնալ պավիլիոնները։ Հմուտ վարպետները համառ կերպով աշխատում են յուրաքանչյուր պավիլիոնի հաղորդել այս կամ այն ռեսպուբլիկայի ազգային կուլտուրայի գծերը։ Ձևավորման համար օգտագործվում է գրանիտ և մարմար, կերամիկա և մայոլիկա, ապակի, բրոնզ և այլն։

Յուրաքանչյուր պավիլիոն, թե՛ գեղեցիկ է և թե՛ յուրովի։ Ղազախական ռեսպուբլիկայի պավիլիոնը բարձրացրել է իր ապակե գմբեթը, նրա պատերին աչքի զարնող քանդակները պատմում են սոցիալիստական գյուղատնտեսության նվաճումների մասին։ «Պովոլժյե» պավիլիոնը մի հսկայական շենք է, որի ճակատին այցելուները կտեսնեն Սովետական Միության եվրոպական մասի դեկորատիվ ապակուց պատրաստված մի քար-

տեղ, որի վրա ցույց են տրված երկրի մեծ կառուցումները։ Բելոռուսիայի պավիլիոնի առաջին սյունաշարքը պատած է ազգային գունավոր ասեղնագործությամբ. այդ հիանալի պավիլիոնի ճակատի երկրորդ սյունաշարքի սյուները փաթաթված են ծաղիկներից կազմված քանդակագործական գեղեցիկ պսակներով։ Ուկրաինական ռեսպուբլիկայի պավիլիոնը հանդիսատեսի առաջ կանգնում է ինչպես մի զարդ։ Պավիլիոնի ձևավորումը արտացոլում է այնպիսի հերոսական թեմա, ինչպիսին է ռուս, ուկրաինացի ժողովուրդների և Սովետական Միության բոլոր ժողովուրդների ազգային տոնը՝ Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակը։

Կենտրոնական հրապարակում կա երկու շատրվան։ Դրանցից մեկը, որը գտնվում է Գլխավոր պավիլիոնի առաջ, կրում է «Ժողովուրդների բարեկամություն» անունը։ Երբ բացվի ցուցահանդեսը, այդ շատրվանը կգրավի ընդհանուրի ուշադրությունը։ Նա դեպի վեր կմղի ջրի միմյանց խաչաձևող 1.700 շիթ, որոնց բարձրությունը հասնելու է 12-ից մինչև 30 մետրի։

Երկրորդ շատրվանը գտնվում է Ուկրաինական ռեսպուբլիկայի պավիլիոնի մոտ։ Նա ստեղծվում է ուրալյան գրող Բաժովի



հեքիաթի մոտիվների հիման վրա և կոչվում է «Քարե ծաղիկ»։

Ցուցահանդեսի ամբողջ տերիտորիայում ստեղծագործական հսկայական աշխատանք է կատարվում։ Ավարտվում է շենքերի, պավիլիոնների և ֆերմաների կառուցումն ու ձևավորումը։ Դրանցում ցույց կտրվեն հանրային անասնաբուծության նվաճումները։ Այդտեղ այցելուները կտեսնեն զանազան ցեղի 720 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 70 ցեղի մոտավորապես 850 ոչխար և այծ, 25 ցեղի ավելի քան 300 խոզ, 36 ցեղի 150 ձի, և ուղտ, 43 ցեղի մոտ 10 հազար գլուխ թռչուն։

Ցուցահանդեսի բացմանն են պատրաստվում ձկնաբուծական և լճակային տնտեսությունը, ճագարաբուծական և մյուս ֆերմաները։ Հարյուրավոր մարդիկ աշխատում են պտղաբուծական այգում, որը ակնառու կերպով ցույց կտա բնության մեծ վերափոխիչ Միչուրինի և նրա հետևորդների՝ սովետական սելեկցիոներների աշխատանքի մեթոդները։ Ցուցահանդեսի բացման օրը այգեգործները կցուցադրեն ավելի քան 500 տեսակ մրգատու և հատապտղի կուլտուրաներ, ավելի քան 17 հազար տեսակ բույսեր։

Համամիութենական գյուղատնտեսական

ցուցահանդեսի տերիտորիայում կառուցվող բոլոր շենքերի ընդհանուր ծավալը կկազմի երկու միլիոն խորանարդ մետր, իսկ 1939—1941 թվականների ցուցահանդեսի շենքերի ծավալը կազմում էր 900 հազար խորանարդ մետր։

Այդ համեմատության միջոցով, դժվար չէ համոզվել, թե որքան հսկայական է այս տարի բացվող ցուցահանդեսը։ Նրա հարյուրավոր շենքերում այցելուները կտեսնեն հազարավոր ամենատարբեր էքսպոնատներ, սկսած բարձր բերքատվություն ունեցող ցորենի խրձերից և վերջացրած գյուղատնտեսական ավիացիայի ինքնաթիռներով։

Լինելով «Բամբակ» պավիլիոնում, այցելուները կծանոթանան Ղազախական «Պախտա-արալ» կոլտնտեսության աշխատանքին. այդ կոլտնտեսությունը անցած տարի 5.400 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից աճեցրել է 32 ցենտներ բամբակ։ «Հացահատիկ» պավիլիոնում նրանք Ուրալի և Սիբիրի մի շարք կոլտնտեսությունների և սովխոզների օրինակով կտեսնեն, թե հացահատիկի արտադրությունն ավելացնելու համար ինչ հսկայական ռեզերվ են ներկայացնում խոպան և խամ հողերը։

Եղբայրական Միութենական ռեսպուբլիկա-



ների պավիլիոններում այցելուները կծանոթանան ոչ միայն գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերված նվաճումներին, այլև բազմազգ երկրի ժողովուրդների հսկայական հաջողություններին, որ նրանք ձեռք են բերել բովանդակությամբ սոցիալիստական և ձևով ազգային կուլտուրայի զարգացման բնագավառում։

Ցուցահանդեսի գլխավոր պավիլիոնը նըվիրված է այն մեծ և հուզիչ թեմային, թե ինչպես են սովետական մարդիկ կենսագործում Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության քաղաքականությունը, որի նպատակն է երկրի տնտեսական և պաշտպանական հզորության հետագա ամրապնդումը, սովետական ժողովրդի նյութական բարեկեցության, նրա կենսամակարդակի անշեղ բարձրացումը, այն խընդրին, թե ինչպես են Սովետական Միության աշխատավորները կոմունիզմ կառուցում։

Գլխավոր պավիլիոնի շենքը բաղկացած է ինը ցուցահանդեսային դահլիճից։ Կենտրոնական դահլիճը նվիրված է մեր դարաշըրջանի մեծագույն փաստաթղթին՝ Սովետական Միության Կոնստիտուցիային։

Նախասրահում քանդակագործներն աշխատում են Սովետական Միության երկու

մեծ քարտեզի վրա, որոնք ցույց են տալիս մեր երկրի հսկայական հաջողությունները։ Այստեղ կարելի է տեսնել նաև սովետական գեղանկարչության ականավոր վարպետ Սոկոլով-Սկալյայի արդեն տեղավորված ստեղծագործությունները, որոնք հանդիսանում են մեր Հայրենիքի ռևոլյուցիոն անցյալից վերցված նկարներ, և պրոֆեսոր Կրեստովսկու երկու քանդակները, որոնք պատկերում են Մեծ Հոկտեմբերի հաղթանակի համար պայքարած հայրենասերներին։ Պավիլիոնի ձևավորման համար իրենց գործերը կներկայացնեն ՍՍՌՄ Գեղարվեստի ակադեմիայի իսկական անդամներ Դեյնեկան և Նալբանդյանը, որոնք կտավի վրա կարտացոլեն, թե ինչպես սովետական ժողովուրդը արձագանքեց պարտիայի 19-րդ համագումարի որոշումներին։

Տասնյակ մարդիկ ներկայումս աշխատում են Գլխավոր պավիլիոնի ներքին ձևավորման վրա. այդ պավիլիոնը օրեցօր ավելի գեղեցիկ է դառնում, ավելի է հարստանում արվեստի նորանոր այնպիսի գործերով, որոնց վիճակված է մտնել սոցիալիստական կուլտուրայի պատմության մեջ։

Կենտրոնական հրապարակից այն կողմ մի լայն ծառուղու վերջում, որի երկու կող-



մից ձգվում են պավիլիոն-պալատների շարքերը, վեր են խոյանում «Գյուղատնտեսության մեքենայացման ու էլեկտրիֆիկացման» պավիլիոնի մետաղե կոնստրուկցիաները։

Բետոնապատ մի լայն ուղի անցնում է հենց պավիլիոնի մեջտեղով։ Նրա երկու կողմում հատուկ պատվանդանների վրա արդեն դրված են գյուղատնտեսական շատ մեքենաներ ու գործիքներ։ Դրանց թիվը հասնում է մոտավորապես 850-ի՝ «Ս—80», «ԴՏ—54», «Կիրովեց—Դ—35» տիպի բարձր արտադրողականություն ունեցող թրթուրավոր տրակտորներ, հացահատիկի կոմբայններ, կարտոֆիլ, վուշ և ճակնդեղ հավաքող կոմբայններ, տորֆա-բուսահողային թաղարներ պատրաստող հաստոց, ինքնագնաց խոտհնձիչ, կալսիչ, որը պատրաստված է մետաղի ամբողջական կտորից, հացահատիկի չորանոց և շատ այլ մեքենաներ։

Մեքենաների մոտից անցնող ճանապարհը այցելուին տանում է կլոր դահլիճը, որով ավարտվում է Պավիլիոնը։ Կոնստրուկտորներն իրավամբ հպարտանում են այդ հիանալի կառույցով, որը մարմնավորում է սովետական շինարարական տեխնիկայի հզորությունը։ 75 մետր բարձրություն ունեցող

այդ դահլիճը պսակված է հսկա ապակե գմբեթով, որի բարակ կողավոր պողպատե կոնստրուկցիաների վրա դրված են հարյուրավոր էլեկտրական լամպեր։ Դահլիճում աշխատում են տասնյակ մարդիկ։ Նրանցից ոմանք մոնտաժում են 1,5 հազար կիլովատ կարողության հիդրոտուրբինի գործող մոդելը, մյուսները լուսավորության գծեր են անցկացնում, ուրիշներն էլ զբաղված են ձևավորումով։

Ժամանակավոր փայտե կամրջակների վրա տեղավորված քանդակագործները ավարտում են մի մեծ կոմպոզիցիա։ Դա քանդակագործական մի խումբ է, որը պատկերում է Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի դրոշը բարձրացրած սովետական մարդկանց։ Բարձրում, գմբեթի հիմքի մոտ, արդեն ավարտվել է միութենական 16 ռեսպուբլիկաների գերբերից կազմված բրոնզե լայն գոտու տեղադրումը։

Մշտապես գործող Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը պատրաստվում է դիմավորելու իր հազարավոր մասնակիցներին՝ գյուղատնտեսության առաջավորներին և միլիոնավոր այցելուներին։

---

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

**Խ. ՍԱՐԳՍՅԱՆ**

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիան քննարկեց և հաստատեց մեր ռեսպուբլիկայի 1954 թվականի պետական բյուջեն, որի հիմնական խնդիրն է՝ ֆինանսական անհրաժեշտ միջոցներով ապահովել ժողովրդական տնտեսության զարգացման և սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման հոյակապ ծրագրի կատարումը։

Սովետական Հայաստանի աշխատավորները ռուս մեծ ժողովրդի և ՍՍՌՄ եղբայրական մյուս ժողովուրդների օգնությամբ խոշոր հաջողությունների են հասել արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի զարգացման ասպարեզում, հատկապես հինգերորդ հնգամյակի տարիներում։ 1953 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների արտադրանքը

1952 թվականի համեմատությամբ աճել է 18,5 տոկոսով, իսկ 1950 թվականի համեմատությամբ՝ 53 տոկոսով։ 1953 թվականի ընթացքում, 1952 թվականի համեմատությամբ, ձեռնարկությունների աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 7 տոկոսով և ապրանքային համադրելի արտադրանքի ինքնարժեքը իջել է 48 միլիոն ռուբլով։

Զգալի նվաճումներ են ձեռք բերված գյուղատնտեսության ասպարեզում։ Ընդարձակվել է մեքենա-տրակտորային կայանների ցանցը, տարեցտարի ավելանում է գյուղատնտեսության մեքենայացումը և էլեկտրիֆիկացումը, աճել են կոլտնտեսությունների եկամուտները, բարձրացել է կոլտնտեսականների նյութական բարեկեցության մակարդակը։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման համար ավելի լայն հնարավորություններ կստեղծվեն ընթացիկ բյուջետային տարում։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի կողմից ընդունված օրենքի համաձայն պետական բյուջեն հաստատված է եկամուտների գծով՝ մեկ միլիարդ 231 միլիոն 565 հազար ռուբլի, ծախսերի գծով՝ մեկ միլիարդ 225



միլիոն 414 հազար ռուբլի, ծախսերի նկատմամբ եկամուտների 6 միլիոն 151 հազար ռուբլու գերազանցումով։

Գերագույն Սովետի սեսիան 1954 թվականի բյուջետային միջոցների հատկացումները կատարել է հետևյալ կերպ. ժողովրդական տնտեսությանը հատկացրել է 351 միլիոն 603 հազար ռուբլի, և բացի դրանից, ձեռնարկությունների և տնտեսական կազմակերպությունների սեփական միջոցների հաշվին՝ 285 միլիոն 465 հազար ռուբլի, ընդամենը 637 միլիոն 68 հազար ռուբլի։

Սեսիան խոշոր հատկացումներ է կատարել արդյունաբերության զարգացման համար։ Արդյունաբերության հատկացումները սահմանված են 78 միլիոն 791 հազար ռուբլի, բացի դրանից, արտադրական ձեռնարկությունների և տնտեսական կազմակերպությունների սեփական միջոցների հաշվին՝ 169 միլիոն 128 հազար ռուբլի, ընդամենը 247 միլիոն 919 հազար ռուբլի։

Արդյունաբերության զարգացման համար հատկացված գումարները հիմնականում ծախսվելու են ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ավելացնելու վրա։ Խոշոր չափերով ավելացվում է մետաքսի և բրդյա գործվածքների, տնային

գործածության առարկաների, կահկարասիքի, ամանեղենի, գորգերի և այլ իրերի արտադրությունը, իսկ սննդամթերքների գծով՝ աճելու է հրուշակեղենի, մսի կիսաֆաբրիկատների, պահածոների, յուղի, պանրի և այլ պարենային ապրանքների թողարկումը։

Ռեսպուբլիկայում գյուղատնտեսության հետագա զարգացման շեշտակի վերելքն ապահովելու նպատակով սեփական գյուղատնտեսության միջոցառումները ֆինանսավորելու համար հատկացրեց 105 միլիոն 4 հազար ռուբլի, բացի դրանից, ձեռնարկությունների ու տնտեսական կազմակերպությունների սեփական միջոցների հաշվին՝ 22 միլիոն 944 հազար ռուբլի, ընդամենը 127 միլիոն 948 հազար ռուբլի։

Գյուղատնտեսությանը հատկացված գումարները հիմնականում ծախսվելու են կապիտալ ներդրումների, շենքերի վերանորոգման, ցեղական անասունների գլխաքանակի ավելացման, հողաշինարարական աշխատանքների կազմակերպման, մեքենա-տրակտորային կայանների ու սովխոզների նյութա-տեխնիկական բազայի ամրապնդման ուղղությամբ։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մշտապես հոգ են տա-



նում աշխատավորների նյութական բարեկեցությունը բարձրացնելու համար։ Այդ են հաստատում արդյունաբերական և պարենային ապրանքների ամեն տարի կատարվող գների իջեցումը, գյուղատնտեսական հարկի նոր օրենքի ընդունումը և այլն։

Միայն մեր ռեսպուբլիկայում այս տարի հարկերը 1953 թվականի համեմատությամբ պակասեցվում են 35,8 տոկոսով, որի շնորհիվ ավելացել են կոլտնտեսությունների և կոլտնտեսականների եկամուտները։

Սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման նկատմամբ պարտիայի և կառավարության ամենօրյա հոգատարությունն իր արտացոլումն է գտնում նաև սովետական առևտրի հետագա ծավալման մեջ։ Ընթացիկ տարում նախատեսվում է ապրանքաշրջանառության շտեսնված աճ, առևտրական ցանցի ընդլայնում, հատկապես գյուղում առևտրի նյութա-տեխնիկական բազայի հագեցում՝ նորագույն սարքավորումների, մեքենաների ու փործիքների ներդրման միջոցով։ Այդ նպատակի համար պետական բյուջեում հատկացված գումարը կազմում է 25 միլիոն 532 հազար ռուբլի։ Պետական և կոոպերատիվ ցանցի ապրանքաշրջանառությունը աճելու է 216 միլիոն ռուբլով։ Այդ

ցույց է տալիս, որ անընդհատ բարձրանում է ռեսպուբլիկայի աշխատավորության գնողունակությունը։

Ռեսպուբլիկայի 1954 թվականի պետական բյուջեում խոշոր գումարներ են հատկացված սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար։ Այդ նպատակին հատկացված է 767 միլիոն 300 հազար ռուբլի, կամ ամբողջ բյուջեի 62,6 տոկոսը, որը 1953 թվականի համեմատությամբ աճ է տալիս 6,5 տոկոսով։

Սոցիալ-կուլտուրական միջոցառումների մեջ մեծ տեսակարար կշիռ ունեն ժողովրդական լուսավորության և կուլտուրայի ծախսերը։ Այդ նպատակին հատկացված է 516 միլիոն 353 հազար ռուբլի, որն ապահովում է ռեսպուբլիկայում ընդհանուր ուսուցման տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցների լայն ցանցի ստեղծումը։ Միայն նոր ուսումնական տարում բացվելու են 30 նոր դպրոց։

Պետական բյուջեում խոշոր գումար է հատկացված ռեսպուբլիկայի բնակչության առողջությունը պահպանելու համար։ Այդ նպատակով կատարված ֆինանսավորումը կազմում է 176 միլիոն 493 հազար ռուբլի։ Ծախսերի այդ ծավալն ապահովում է հի-



վանդանոցների, դիսպանսերների, ծննդատների, մանկական հիմնարկների, սանատորիաների, բուժ-պրոֆիլակտիկ հիմնարկների ցանցի լայն զարգացումը և նրանց նյութական բազայի ամրապնդումը։

Կարևոր նշանակություն ունի մեր աշխատավորության ֆիզիկական դաստիարակությունը, սպորտի զարգացումը, որի համար հատկացված է 6 միլիոն 656 հազար ռուբլի կամ 20,7 տոկոսով ավելի, քան 1953 թվականին։

Նախորդ տարիների համեմատությամբ բյուջեում ավելի շատ հատկացումներ են արված սոցիալական ապահովության և սոցիալական ապահովագրության գծով։ Այդ նպատակով հատկացված է 67 միլիոն 798 հազար ռուբլի, որը ծախսվելու է պատերազմի հաշմանդամների և նրանց ընտանիքների, աշխատանքի հաշմանդամների ու նրանց ընտանիքների կենսաթոշակների և նպաստների համար, ժամանակավոր անաշխատունակության դեպքում բանվոր-ծառայողներին, ինչպես նաև հղիության, ծննդաբերության դեպքում կանանց կենսաթոշակներ ու նպաստներ տալու համար։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մշտապես հոգ են

 

տանում այն մասին, որպեսզի մեր աշխատավորները ապրեն լավ պատրաստված, կուլտուրական բնակարաններում, որի համար մեր երկրում իրականացվում է բնակարանային և կոմունալ խոշոր շինարարություն։

Ընթացիկ բյուջետային տարում կոմունալ-բնակարանային տնտեսության ֆինանսավորման համար հատկացվում է 91 միլիոն 927 հազար ռուբլի և բացի դրանից, ձեռնարկությունների սեփական միջոցների հաշվին՝ 33 միլիոն 603 հազար ռուբլի, ընդամենը 125 միլիոն 530 հազար ռուբլի, որը 1953 թվականի համեմատությամբ աճում է 35,2 տոկոսով։

Քաղաքների և շրջանային կենտրոնների բարեկարգման համար հատկացված է 78 միլիոն ռուբլի, որը ծախսվելու է բնակարանային ֆոնդի, ճանապարհների, կամուրջների, փողոցների բարեկարգման, կանաչապատման, լուսավորության ցանցի ընդլայնման և այլ նպատակների համար։

Ինչպես տեսնում ենք բյուջետային ծախսերի գերակշռող մասը հատկացված է ժողովրդական տնտեսության և սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորման համար։ Բյուջեն արտացոլում է մեր



պարտիայի և կառավարության մշտական հոգատարությունը ժողովրդի բարօրության, նրա նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման մասին։

Այսպիսով, 1954 թվականի պետական բյուջեում նախատեսված ֆինանսական միջոցները լրիվ չափով ապահովում են ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման հինգերորդ հնգամյակի չորրորդ տարվա պլանի անշեղ կատարումը։

Ռեսպուբլիկայի 1954 թվականի պետական բյուջեն լրիվին ապահովում է այն միջոցառումների ֆինանսավորումը, որ նախատեսված է հինգերորդ հնգամյակի չորրորդ տարվա ժողովրդա-տնտեսական պլանով։

Սովետական Հայաստանի աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կհասնեն նորանոր հաջողությունների կոմունիզմի հաղթական շինարարության մեծ ու հոյակապ գործում։

---

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ՀԱՑԱՀԱՏԻԿԻ ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

## Մ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

*Հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու վերաբերյալ կոլտնտեսությունների համար սիստեմատիկաբար նպատակասլաց ագիտացիոն զրույցներ է կազմակերպում Ազիզբեկովի շրջանի Ռինդ գյուղի Կագանովիչի անվան կոլտնտեսության № 1 բրիգադայի ագիտատոր Հ. Ասատրյանը։ Նա օրերս նույն բրիգադայում ագիտացիոն զրույց ունեցավ «Հացահատիկի բերքատվությունը բարձրացնելու մասին» թեմայով, կապված ՍՄԿԿ Կենտկոմի Փետրվար-մարտյան պլենումի որոշման հետ։*

*— Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը,— ասաց ագիտատորը,— ստեղծել են բոլոր նպաստավոր պայմանները գյուղատնտեսության արագ զարգացման համար։*



*Ագիտատորն ունկնդիրներին պարզաբանելով, որ մեր երկրում արդեն լուծված է հացահատիկի արտադրության պրոբլեմը, միաժամանակ մանրամասնորեն խոսեց այն մասին, որ մեր երկրի էկոնոմիկայի ամրապնդման, արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման և գների սիստեմատիկ իջեցման շնորհիվ մեծ չափերով ավելացել է բնակչության գնողունակությունը, աճել են նրանց ճաշակն ու պահանջմունքը հացի նկատմամբ։ Ագիտատորը կոնկրետ թվական տվյալներով ցույց տվեց, թե մոտակա 2—3 տարում մեր երկիրը ինչպիսի հաջողությունների պետք է հասնի հացահատիկի արտադրությունը ավելացնելու բնագավառում։*

*ՍՄԿԿ Կենտկոմի Փետրվար-մարտյան պլենումի պատմական որոշումների կենսագործումը, նշում է ագիտատորը, կտա այն արդյունքը, որ 1954—55 թ. թ. զգալիորեն կբարձրանա հացահատիկի համախառն բերքը, իսկ հացահատիկի պետական մթերումներն ու գնումները 1953 թվականի համեմատությամբ կավելանան առնվազն 35—40 տոկոսով։ 13 միլիոն հեկտար խամ և խոպան հողերի յուրացումից հետո, յուրաքանչյուր*

հեկտարից 10—11 ցենտներ բերք ստանալու դեպքում, մեր երկիրը տարեկան կստանա միլիոնավոր փութ լրացուցիչ հացահատիկ։ Մի շարք առաջավոր կոլտնտեսությունների փորձը ցույց է տալիս,— ասում է նա,— որ այդ հողերից, ագրոկանոնների ճիշտ կիրառման դեպքում, կարելի է ստանալ հեկտարից 14—15 ցենտներ հացահատիկ, որի դեպքում հացահատիկի համախառն բերքը նոր յուրացված հողերի վրա կարող է կազմել մեկ միլիարդ 100 միլիոն փթից մինչև 1 միլիարդ 200 միլիոն փութ։ Այս կարևոր խնդրի կատարման համար պետությունը նոր յուրացվող հողերի շրջանն է ուղարկելու ավելի քան 120 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 10 հազար կոմբայն, անհրաժեշտ քանակությամբ գութաններ, կուլտիվատորներ, շարքացաններ և այլ մեքենաներ ու սարքավորումներ, ինչպես նաև գյուղատնտեսության որակյալ կադրեր։

Ագիտատորը ունկնդիրներին միաժամանակ պատմում է հացահատիկի արտադրության հետագա ավելացման կապակցությամբ այն խնդիրների մասին, որ դրված են ռեսպուբլիկայի, շրջանի և կոլտնտեսության առջև։

Ագիտատորը հանգամանորեն բացահայ-



տեց մի շարք թերություններ, որ գոյություն ունեն իրենց կոլտնտեսությունում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու գործում։

— Մեր կոլտնտեսությունում հացահատիկային կուլտուրաների ցածր բերքատվության պատճառն այն է, ասում է նա, որ մինչև հիմա սխալ է կիրառվել ցանքաշրջանառությունը, հաճախ տեղի են ունեցել ագրոկանոնների խախտումներ և անբավարար են մեքենայացվում աշխատատար պրոցեսները։ Օրինակ, անցյալ տարի գարնանացանը չըկատարվեց սահմանված գրաֆիկի համաձայն և ցանքի տևողությունը խիստ ձգձգվեց։ Բացի այդ, տեղական պարարտանյութը իր նպատակին չէր ծառայում, նրա միայն մի չնչին մասն էր տեղափոխվում դաշտ, այն էլ միայն տեխնիկական կուլտուրաների պարարտացման համար, իսկ մնացածը փչանում էր անտեղի։

Այնուհետև ագիտատորն ունկնդիրներին պատմեց այն ձեռնարկումների մասին, որ կատարելու է կոլտնտեսությունը առաջիկայում հացահատիկի բերքատվությունը բարձրացնելու համար։

Այս գյուղատնտեսական տարում կոլտնտեսությունը յուրացնելու է 30 հեկտար

խամ հող, որից 10 հեկտարը բրիգադան ցանել ու արդեն մշակում է։ Դաշտ է տեղափոխվել 2000 տոննա տեղական պարարտանյութ, որից 400 տոննան՝ բրիգադայի ուժերով։ Կոլտնտեսության 390 հեկտար աշնանացանից 202 հեկտարը կատարված է մաքուր ցելի ու պարարտացված հողերի վրա։ Բացի այդ, այս տարի մեզ մոտ կատարվել է ցելի մշակում, 2—3 անգամ կուլտիվացիա, նախատեսված է գյուղատնտեսական աշխատանքների կեսից ավելին մեքենայացնել։ Այնուհետև ագիտատորն իր զրույցի մի մասը նվիրում է ցանքատարածությունների ոռոգման սիստեմի բարելավման հարցերին։

— Մենք հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը չենք կարող բարձրացնել, ասում է ագիտատորը, եթե չբարելավենք ոռոգման սիստեմը մեր դաշտերում։ Իսկ դրա բարելավման միակ միջոցը մեզ մոտ ջրամբարներ կառուցելն է, որը հնարավորություն կտա 130 հեկտար հողամաս դարձնել ջրովի։

Ագիտացիոն զրույցին ակտիվորեն մասնակցում էին նաև ունկնդիրները, որոնք պատմում էին, թե ինչ են արել իրենք կոլտնտեսությունում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու համար։

---

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՕՂԱԿԸ

Ագրոնոմ Վ. ԱՐԱՔՍՅԱՆ

Սիսիանի շրջանի Վաղուդիի «Դրուժբա» կոլտնտեսության Զոհրա Ջաֆարովայի օղակը ուսանելի աշխատանք է կատարում ծխախոտի մշակությունը բարելավելու և այդ ճանապարհով բերքատվությունը բարձրացնելու գործում։ Ծխախոտի մշակության հիմնական աշխատանքները կատարելիս օղակը հատուկ ուշադրություն է դարձնում տրակի վրա, խստորեն հետևում է, որպեսզի ծխախոտի քաղհանը, փխրեցումը, բուկլիցը, սնուցումը և մյուս աշխատանքները կատարվեն ճիշտ ժամանակին և գերազանց որակով։

— Ծխախոտի ամենավտանգավոր թշնամին,— ասում է օղակավար Ջաֆարովան,— մոլախոտն է, որը ծխախոտի բույսին զրկում է սննդանյութերից, ջրից, լույսից և նպաստում հիվանդությունների ու վնասատուների տարածմանը։ Ուստի անհրաժեշտ է,

իր դաշտում մոլախոտեր երևալիս անմիջապես քաղհան կատարվի։

Առաջավոր ծխախոտագործուհին իր օղակում ծխախոտի պլանտացիաների փխրեցումը կատարում է անկախ նրանից՝ դաշտը վարակված է մոլախոտերով, թե ոչ։ Դրա շնորհիվ հողի մեջ երկար ժամանակ պահպանվում է եղած խոնավությունը և վերջապես փխրեցումը նպաստում է հողում կատարվող կանոնավոր օդափոխությանը. Նրա օղակը առաջին քաղհան-փխրեցումը սովորաբար կատարում է սածիլը դաշտ փոխադրելուց 7—8 օր հետո։ Երկրորդ և հաջորդ քաղհան-փխրեցումները կատարվում են 8—10 օրը մեկ անգամ։ Առաջին քաղհան-փխրեցման ժամանակ փխրեցվում են արմատավզիկի շուրջը գոյացած կեղևները, որը բույսին տալիս է աճելու և զարգանալու հնարավորություն։ Փխրեցումը կատարում է ոչ խորը՝ 5—6 սմ., որովհետև բույսի արմատները հողում դեռ լրիվ չեն ամրացել։ Երկրորդ և հաջորդ քաղհան-փխրեցումները կատարում է 8—12 սմ. խորությամբ։ Օղակի անդամները չեն բավարարվում ծխախոտի պլանտացիաները 2—3 անգամ քաղհանելով ու փխրեցնելով։ Նրանք այդ աշխատանքները կատարում են 4—5 անգամ։ Մշակության



ընթացքում ընկ. Ջաֆարովան խոշոր ուշադրություն է դարձնում ծխախոտի պլանտացիաները ժամանակին ջրելու վրա։ Նկատի ունենալով իր օղակի հողային պայմանները և ծխախոտի տեսակը, նա սահմանել է ջրման համապատասխան ռեժիմ։ Սածիլաջուր տալուց հետո, հաջորդ ջրերը օղակը տալիս է ըստ բույսի պահանջի, մեծ մասամբ գիշերները։

Ծխախոտի սնուցումը հանդիսանում է այն կարևորագույն միջոցառումներից մեկը, որն ապահովում է բերքատվության բարձրացումը։ Ճիշտ սնուցում տալու դեպքում ոչ միայն զգալիորեն բարձրանում է բերքատվությունը, այլև լավանում է ստացվող հումքի որակը։

Առաջավոր ծխախոտագործական օղակը ծխախոտի բույսերը սնուցելիս հետևում է, որպեսզի պարարտանյութը հավասարապես բաշխվի շարքերի միջև։ Պարարտանյութը բաշխելիս հաշվի է առնվում դաշտի առանձին հողակտորների բերրիությունը, որից ելնելով ագրոնոմի օգնությամբ որոշվում է սնուցման չափը և ժամանակը։

Ծխախոտի մշակությունը բարելավելու գործում խոշոր նշանակություն ունի ծաղկատումը և ավելորդ շիվերի հեռացումը (բջա-

*տում)։ Օղակը հատուկ ուշադրություն է դարձնում այդ աշխատանքների վրա։ Ժամանակին ծաղկատվում և հեռացվում են ավելորդ շիվերը, որը նպաստավոր պայմաններ է ստեղծում բերքի շուտ հասունացման և տերևների լավ զարգացման համար։ Բացի այդ, ծաղկատած և շիվերը հեռացրած ծխախոտի բույսը երաշտից քիչ է վնասվում և շուտ հասունանում է, որով վերացվում է ցրտահարության վտանգը։*

*Ճիշտ կիրառելով ագրոտեխնիկական միջոցառումները և սիստեմատիկորեն բարելավելով ծխախոտի մշակությունը, օղակը ձեռք է բերել փայլուն արդյունքներ։ Օղակն անցյալ տարի ծխախոտի յուրաքանչյուր հեկտարից նախատեսված 7 ցենտների փոխարեն ստացավ 18 ցենտներ բերք։ Լավ մշակության շնորհիվ օղակն այս տարի նույնպես բարձր բերք կստանա։*

---



# ԱՃՈՒՄ ԵՎ ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՅՈՒԹԱԿԱՆ—ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՆ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

*Մեր մեծ երկրում, հարազատ Կոմունիստական պարտիայի վիթխարի աշխատանք է կատարում սոցիալիստական գյուղատնտեսության նյութական-տեխնիկական բազան ամրապնդելու և ուժեղացնելու համար։ Մեքենա-տրակտորային կայանները անընդհատ հագեցվում են բարձր զարգացման հասած սովետական գյուղատնտեսական մեքենաներով և գործիքներով։ Այդ են ցույց տալիս հետևյալ թվերն ու փաստերը։*

✪ *Տանր ինդուստրիայի հզոր հիմքի վրա մեր երկրի գյուղատնտեսությունը ժամանակակից տեխնիկայով զինվում է ավելի ու ավելի առատորեն և արագացրած տեմպերով։ Այժմ ՍՍՌՄ-ում գործում են ավելի քան 9 հազար մեքենա-տրակտորային և մասնագիտացված կայաններ։*

✪ *Կատարելով ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումը, միայն 1953 թվականի չորրորդ*

*ժամանակում ՍՍՌՄ արդյունաբերությունը գյուղատնտեսությանը մատակարարեց մոտ 42 հազար տրակտոր (փոխադրած 15-ուժանոցի), ավելի քան 11 հազար հացահատիկային կոմբայն, ավելի քան 22 հազար տրակտորային շարքացան, հազարավոր տրակտորային խոտհնձիչներ և ուրիշ առաջնակարգ մեքենաներ։*

✪ *Այս տարվա սկզբին մեր երկրի ՄՏԿ-ներն ունեին մեկ միլիոն տրակտոր (փոխադրած 15-ուժանոցի), այդ թվում 460 հազար դիզելային տրակտոր, 270 հազար հացահատիկային կոմբայն, մոտ 450 հազար հացահատիկային-տրակտորային շարքացան, ավելի քան 260 հազար տրակտորային խոտհնձիչ և շատ ուրիշ բարդ մեքենաներ։*

✪ *1952 թվականին կոլտնտեսություններում աշխատանքների մեքենայացումը կազմում էր հացահատիկի ցանքի գծով 87 տոկոս, հացահատիկի կոմբայնային բերքահավաքի գծով՝ 70 տոկոս, ցելերի գծով՝ 96 տոկոս, ցրտահերկի գծով՝ 97 տոկոս, բամբակենու ցանքի գծով՝ 98 տոկոս, շաքարի ճակնդեղի ցանքի գծով 95 տոկոս։*

✪ *1953 թվականին կոլտնտեսություններում աշխատանքի մեքենայացումը է՛լ ավելի բարձր մակարդակի հասավ։ Գրեթե ամբողջ աշնանավարը կատարված է մեքենայական ուժով։ Աշնանացանի աշխատանքները մեքենայացված են 93 տոկոսով, գարնանացանինը՝ 83*



*տոկոսով, հացահատիկի կոմբայնային բերքահավաքը՝ 77 տոկոսով։*

✪ *Այս տարի խամ և խոպան հողերի յուրացման շրջանները կուղարկվեն (արդեն մեծ քանակությամբ ուղարկվել են) 120 հազար տրակտոր (փոխադրած 15-ուժանոցի), 10 հազար կոմբայն և համապատասխան քանակությամբ տրակտորային գութաններ, շարքացաններ, սկավառակավոր ծանր փոցխեր, կուլտիվատորներ և այլ գյուղատնտեսական մեքենաներ։ Այդ նույն շրջաններն են ուղարկվում անհրաժեշտ քանակությամբ ավտոմեքենաներ, ավտոշրջիկ նորոգման արհեստանոցներ, ավտո-ցիստեռններ, ավտոլիցքավորիչներ, ստացիոնար նավթամաններ, գործիքներ և սարքավորում։*

✪ *ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումից 6 ամիս հետո, երկրի ՄՏԿ-ներն ու սովխոզները ստացան ընդհանուր գործածության 139 հազար տրակտոր՝ փոխադրած 15-ուժանոցի, 18 հազար միջշարային մշակության տրակտոր, 41 հազար հացահատիկային կոմբայն, 69 հազար բեռնատար ավտոմեքենա, ավելի քան 2 միլիոն գյուղատնտեսական գործիքներ ու մեքենաներ, ավելի քան 6 միլիոն տոննա հանքային պարարտանյութ։*

✪ *Մեքենա-տրակտորային կայանները և սովխոզները 1954—1957 թ. թ. ընթացքում կստանան առնվազն 500 հազար տրակտոր՝ 15 ուժանոցի վերածած և հեռաշար հերկի 250 հազար հատ տրակտոր, ինչպես նաև*

անհրաժեշտ թվով գյուղատնտեսական մեքենաներ, ավտոմոբիլներ, շրջիկ ավտո-արհեստանոցներ, նավթամթերքների ամբարներ և այլ սարքավորում։

✪ Սոցիալիստական գյուղատնտեսության նյութական-տեխնիկական բազայի չտեսնված հզորության փայլուն ապացույց է խամ և խոպան հողերի յուրացումը։ Սովետական ինդուստրիան նոր հողերի յուրացման համար տալիս է առաջնակարգ գյուղատնտեսական մեքենաներ՝ գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները պատվով են կատարում 13 միլիոն հեկտար նոր հողեր յուրացնելու մասին պարտիայի կողմից առաջադրված խնդիրը։

✪ Արդեն ՌՍՖՍՌ-ի և Ղազախստանի կոլտնտեսություններն ու մեքենա-տրակտորային կայանները հունիսի մեկի տվյալներով, վարել են 3 միլիոն հեկտար նոր հող, որից 2 միլիոն 400 հազար հեկտար տարածության վրա կատարված է հացահատիկային կուլտուրաների ցանք։ Նոր յուրացվող հողերում այս տարվա գարնանացանի պլանը գերակատարված է 672 հազար հեկտարով։

✪ Ալթայի երկրամասում կոլտնտեսությունները նախատեսված 500 հազար հեկտարի փոխարեն խամ և խոպան հողերում կատարել են 707 հազար հեկտար ցանք։

✪ Նոր յուրացվող հողերի շրջանում գտնվող հացահատիկային սովխոզները արդեն կատարել են 700 հազար հեկտար, նախատեսված 500 հազար հեկտարի



դիմաց և հերկել են մոտ 1 միլիոն 400 հազար հեկտար խամ հողեր։

✪ Շնորհիվ այն բանի, որ մեքենա-տրակտորային կայանները հագեցված են առաջնակարգ տեխնիկայով, նոր յուրացվող հողերում լիովին կիրառվում է ագրոտեխնիկական կոմպլեքսը, վարը, ցանքը և մյուս մշակությունները կատարվում են սեղմ ժամկետում։ Այսպես, չնայած այս տարվա վատ եղանակներին, Ալթայի երկրամասում բոլոր նոր յուրացվող հողերում ցանքը կատարվեց 10—12 աշխատանքային օրում։

✪ Այս բոլորի հետ միասին հաջողությամբ լուծվում է մեքենա-տրակտորային կայանների կադրերի պրոբլեմը։ ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումից հետո, որպես մշտական բանվորներ, ՄՏԿ-ների հաստիքների մեջ մտցվեցին մոտ մեկ միլիոն 250 հազար մշտական բանվորներ, այդ թվում՝ 870 հազար տրակտորիստներ, տրակտորային բրիգադների 187 հազար բրիգադիրներ և նրանց օգնականներ, գյուղատնտեսական բարդ մեքենաների 24 հազար մեքենավարներ և այլ աշխատողներ։

✪ Կոլտնտեսություններին սպասարկելու համար ՄՏԿ-ներն են ուղարկվել ավելի քան 100 հազար ագրոնոմ և զոոտեխնիկ։ ՄՏԿ-ներում աշխատելու համար արդյունաբերությունից և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերից ուղարկվել են 23 հազար ինժեներներ և տեխնիկներ։ Ի պատասխան պարտիայի

կոչի՝ ՄՏԿ-ներն են վերադարձել մոտ 50 հազար մեխանիզատորներ։

✪ Գյուղատնտեսության մեքենայացման ինստիտուտների և տեխնիկական այլ բուհերի այս տարվա շրջանավարտներից ՄՏԿ-ներն աշխատանքի կմեկնեն 2500 ինժեներ։ Միաժամանակ գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման ինստիտուտներում ու ֆակուլտետներում ուսանողների թիվը անընդհատ ավելանալու է, 1955 թվականին այն հասնելու է 7500 մարդու։

✪ Եթե մինչև ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը ՄՏԿ-ների դիրեկտորներից բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցողները կազմում էին 69 տոկոս, ապա այժմ նրանք կազմում են 79 տոկոս, բարձրագույն և միջնակարգ կրթությամբ գլխավոր ինժեներները կազմում էին 36 տոկոս, այժմ՝ 88 տոկոս։

Մեր երկրում մեծ աշխատանք է կատարվել և կատարվում է գյուղատնտեսության նյութական-տեխնիկական բազան ամրապնդելու ուղղությամբ։ Հենց վերջերս ՍՍՌՄ Գերագույն Սովետը հաստատելով ՍՍՌՄ 1954 թվականի բյուջեն, գյուղատնտեսության հետագա զարգացման համար կատարվող այս տարվա ծախսերը սահմանեց 62 միլիարդ 458 միլիոն 360 հազար ռուբլի։ Դա մի խոշոր ազդակ է սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու համար։

---



# ՊԱՏԵՏ-ԼԱՈ ԵՎ ԿԽՄԵՐ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## ՊԱՏԵՏ-ԼԱՈ

Պատետ-Լաոն գրավում է Հնդկաչին թերակղզու միջին մասը։ Այդ երկրի տերիտորիան կազմում է 220 հազար քառակուսի կիլոմետր, բնակչությունը՝ մոտավորապես երեք միլիոն մարդ։ Պատետ-Լաոի մայրաքաղաքը Վյեն-Տյանն է, որն այժմ օկուպացված է գաղութարարների կողմից։

Ֆրանսիական գաղութարարները Պատետ-Լաոն զավթել են 1893 թվականին։ Նրանք այդ երկիրը դարձրին իրենց գաղութը, այն ձևականորեն անվանելով Լաոսի պրոտեկտորատ։ Պատետ-Լաոի գերագույն իշխանությունը իրականացնում էր ֆրանսիական ռեզիդենտը, որին ենթարկվում էր ամբողջ տեղական ադմինիստրացիան, որը կազմված էր ֆեոդալական վերնախավից՝ մարիոնետ թագավորի գլխավորությամբ։ Պատետ-Լաոյում հաստատվեց գաղութային դաժան շահագործման և ճնշման ռեժիմ։ Ֆրանսիական մի բուռ կապիտալիստներ զավթել են

երկրի բրնձի ամենաբերրի դաշտերը և անտառավայրերը։ Պատետ-Լաոի բնական հարստությունները բարբարոսաբար հափշտակվում էին, տեղական արդյունաբերության զարգացումը կասեցվում։

Հետևելով «բաժանիր և տիրիր» իմպերիալիստական կանոնին, գաղութային իշխանությունները խանգարում էին, որ Պատետ-Լաոի ժողովուրդը հարաբերություններ ունենա իրեն բարեկամ Վյետնամի ու Կխմերի ժողովուրդների հետ։ Նրանք ամեն կերպ արգելակում էին երկրի կուլտուրական զարգացումը։ Դրա հետևանքով Պատետ-Լաոի բնակչության 95 տոկոսը անգրագետ էին։ Տարրական դպրոց էր հաճախում միայն երեք հազար երեխա։ Երկրում չի եղել բարձրագույն ուսումնական հաստատություն։

Պատետ-Լաոի ժողովուրդը բազմիցս ապստամբել է օտարերկրյա զավթիչների դեմ։ Այդ պայքարը հատկապես ուժեղացավ այն բանից հետո, երբ Պատետ-Լաոյում ֆրանսիական իշխանությունները երկիրը հանձնեցին յապոնական իմպերիալիստներին։ Բաժան-բաժան տեղի ունեցող ապստամբությունները աստիճանաբար վերաճեցին զինված ազգային-ազատագրական պայքարի։



Սովետական Բանակի կողմից յապոնական իմպերիալիզմի հիմնական ուժի ջախջախումից և Վյետնամում օգոստոսյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Պատետ-Լաոի ժողովուրդը թոթափեց գաղութային լուծը և 1945 թվականի հոկտեմբերի 12-ին հռչակեց երկրի անկախությունը։ Մարիոնետային թագավոր Սիսավանգ Վոնգը, որը իշխանության գլուխ էր մնում միայն ֆրանսիական և յապոնական սվինների օգնությամբ, գահից հրաժարվեց։ Երկրում ստեղծվեց ժամանակավոր դեմոկրատական կառավարություն։

Սակայն արդեն 1946 թվականի մարտին ֆրանսիական զորքերը Պատետ-Լաոի ժողովրդի դեմ նորից ագրեսիա սկսեցին։ Թվական և ռազմա-տեխնիկական գերազանցությունը նրանց հնարավորություն տվեց ժամանակավորապես օկուպացնել երկրի մի զգալի մասը։ Ֆրանսիական իշխանությունները համաձայնության եկան Պատետ-Լաոյի դավաճան ֆեոդալական վերնախավի հետ։ Երկրի օկուպացված տերիտորիայում վերականգնվեց մարիոնետային ռեժիմը։ Բայց Պատետ-Լաոյի ժողովուրդը չդադարեցրեց պայքարը գաղութարարների դեմ։ Ամբողջ երկրում լայն մասշտաբով ծավալվեց պար-

տիզանական պատերազմը։ Այդ պատերազմի ընթացքում ստեղծվեց, ամրապնդվեց և կոփվեց Պատետ-Լաոյի ժողովրդա-ազատագրական բանակը։

Միաժամանակ ամրապնդվում էին երկրի դեմոկրատական ուժերը։ 1950 թվականի օգոստոսին ստեղծվեց Պատետ-Լաոյի Ազգային միասնական ճակատ (Նեո-Լաո Իտսարա), որը միավորում է 150 հազար մարդ։ 1950 թվականի վերջին ամբողջ Պատետ-Լաոյի բնակչության ներկայացուցիչների կոնֆերենցիան նշանակեց նոր կառավարություն և սահմանեց Պատետ-Լաոյի զինված դիմադրության և ազգային շինարարության քաղաքական ծրագիրը։ Կառավարությունը գլխավորեց Թագաժառանգ Սուֆանուվոնգը, որը դեռևս ճապոնական օկուպացիայից էլ առաջ իրեն դրսևորել էր որպես հայրենասեր և օտարերկրյա զավթիչների դեմ պայքարող ակտիվ մարտիկ։

1953 թվականի ապրիլին Պատետ-Լաոյի ժողովրդա-ազատագրական բանակը հզոր հարձակում սկսեց գաղութարարների զորքերի դեմ։ Այդ հարձակման ընթացքում, որը ցույց տվեց ժողովրդա-ազատագրական բանակի աճող մարտական հզորությունը և կազմակերպվածությունը, ազատագրվեց բա-



վականաչափ մեծ տերիտորիա, այդ թվում Սամ-Նեուի ամբողջ նահանգը, Բան-բան, Սիենգ-Կուանգ քաղաքները և այլն։

1953 թվականի դեկտեմբերին Պատետ-Լաոյի ժողովրդա-ազատագրական բանակը նոր հզոր հաղթանակ տարավ Թակեկ քաղաքի շրջանում։ Ֆրանսիական զորքերը դուրս շպրտվեցին Կամ-Կետայից, Լակսաոյից, Նապեից, Ֆոնգ-Տյուից և Բոնենգայից։ 1954 թվականի սկզբին Պատետ-Լաոյի ժողովրդական զորամասերը կտրեցին Դոնգ Խա և Սավաննակետ քաղաքները միացնող ստրատեգիական կարևոր մագիստրալը և օկուպանտներին դուրս քշեցին Սավաննակետ նահանգի հյուսիսային մասից։ Հաջորդ ամիսներին ժողովրդա-ազատագրական բանակը հարձակում սկսեց հակառակորդի հենակետերի դեմ Նամ-Խու (հյուսիսային Պատետ-Լաո) գետի հովտում և այդ գետի ամբողջ հովիտը մաքրեց գաղութարարներից։

Ներկայումս ազատագրված է երկրի տերիտորիայի կեսից ավելին՝ մեկ միլիոնից ավելի բնակչությամբ։ Ազատագրված շրջանները գտնվում են դիմադրության կառավարության հսկողության տակ, որին լայն աջակցություն է ցույց տալիս ժողովուրդը։ Կարճ ժամանակամիջոցում այդ կառավարու-

թյունը իրագործեց մի շարք դեմոկրատական ռեֆորմներ։ Չնայած դժվար պայմաններին և տեղի ունեցող ռազմական գործողություններին, իրագործվում է արտադրանքի թողարկումն ավելացնելու և ժողովրդի կենսամակարդակը բարձրացնելու խնդիրը։

## ԿԽՄԵՐ

Կխմեր պետությունը (ֆրանսիական գաղութարարները սխալ կերպով այն անվանում են Կամբոջա) գտնվում է Հնդկաչին թերակղզու հարավային մասում։ Այդ պետության տերիտորիան 181 հազար քառակուսի կիլոմետր է, իսկ բնակչությունը՝ չորս միլիոնից ավելի։ Բնակչության ճնշող մեծամասնությունը՝ մոտավորապես երեք միլիոն մարդ կխմերներ են, նշանակալի մասը, առնըվազն 300 հազար՝ վյետնամցի են։ Պետության մայրաքաղաքը Պնոմ-Պենն է։

Կխմերը Ֆրանսիայի կողմից նվաճվել է 1863 թվականին։ Ֆրանսիական իշխանությունները Կխմերը հայտարարեցին իրենց պրոտեկտորատ, չնայած որ նա, ինչպես և Պատետ-Լաոն, փաստորեն գաղութ էր։ Երկարամյա գաղութային տիրապետությունը կործանարար ազդեցություն թողեց երկրի



կյանքի բոլոր բնագավառների վրա, որը փաստորեն վերածվել էր Ֆրանսիայի գյուղատնտեսական հումքի մի կցորդի։ Կխմերի տնտեսությունը միակողմանի էր զարգանում։ Գաղութային իշխանությունները երկրում պաշտպանում էին ֆեոդալական կարգերը, հատկապես գյուղատնտեսության մեջ։

Ինչպես Պատետ-Լաոյի ժողովուրդը, այնպես էլ Կխմերի ժողովուրդը բազմիցս զինված կռվի է ելել իր ճնշողների դեմ։ Ճապոնական օկուպացիայի ժամանակաշրջանում ժողովրդա-ազատագրական պայքարը առանձնապես լայն մասշտաբ ընդունեց։ 1945 թվականին Սովետական Բանակի կողմից իմպերիալիստական Ճապոնիայի հիմնական ուժերի ջախջախումը և հարևան Վյետնամում տեղի ունեցած օգոստոսյան ռևոլյուցիան մեծ ազդեցություն ունեցան ինչպես Պատետ-Լաոյի, այնպես էլ Կխմերի ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի հետագա զարգացման վրա։ Կխմերի ժողովրդին հաջողվեց հասնել իր երկրի ազատագրմանը։

Բայց 1945 թվականի վերջերին ճապոնական ջախջախված բանակի մնացորդները զինաթափելու պատրվակի տակ Կխմերում

նորից երևացին ֆրանսիական զորքեր: 1946 թվականի հունվարին ֆրանսիական իշխանությունները զենքի օգնությամբ երկրի վզին փաթաթեցին մարիոնետային կառավարություն, որը հնազանդորեն ենթարկվում էր օտարերկրյա զավթիչներին:

Մարիոնետային կառավարության հակաժողովրդական քաղաքականությունը զայրույթ և դիմադրություն առաջ բերեց ժողովրդի մեջ: Ազգային-ազատագրական շարժումը աճում և ուժեղանում է, դառնում ավելի ու ավելի կազմակերպված: Պայքարի ընթացքում ստեղծվեց Կխմերի ժողովրդաազատագրական բանակը, որը մարտական համագործակցության մեջ մտնելով պարտիզանական ջոկատների հետ, օկուպանտներից մաքրեց մի ընդարձակ տերիտորիա: Այժմ լրիվ ազատագրված են՝ Վերին Ճիլոնգ, Միմոտ, Լատն, Լակա, Ակրան շրջանները, որոնք կազմում են Արևելյան ազատ գոտի. Արևմտյան ազատ գոտու մեջ մտնող Բատամբանգ ու Պուրսատ նահանգների մեծ մասը և հարավային ազատ գոտու մեջ մտնող Կոխդակ, Սվայ-Ռիենգ, Պրեյվենգի Կամպոտ նահանգների զգալի մասը: Ազատագրված տերիտորիան կազմում է ամբողջ



Կխմերի ավելի քան մեկ երրորդ մասը, որտեղ ապրում են մեկ միլիոն մարդ:

1950 թվականի ապրիլին ժողովրդի ներկայացուցիչներից գումարվեց Ազգային կոնֆերենցիա, որը նշանակեց Ազգային-ազատագրման կոմիտե և հռչակեց Կխմեր պետության անկախությունը: Հետագայում ազատագրման կոմիտեն վերակազմվեց ժամանակավոր կառավարության, որը գլխավորեց պրեզիդենտ Սոն Նգոկ Մինը՝ նախկինում բուդդայական մի հոգևորական, որը վաղուց հայտնի էր ժողովրդին որպես օտարերկրյա ստրկացնողների դեմ պայքարող ակտիվ մարտիկ: Նա 1943 թվականին մասնակցել է երկու հազար բուդդայական հոգևորականների նշանավոր արշավին, որոնք բողոքում էին իմպերիալիստների դեմ պայքարող վանական Աշա-Խեմչիոյի ձերբակալման դեմ:

Ազգային ազատագրության կոմիտեն հանդիսավոր կերպով հռչակեց Կխմերի ժողովրդի անկախության դեկլարացիան, որտեղ մասնավորապես ասված է.

«Ամբողջ կխմերական ժողովուրդը լի է վճռականությամբ իր անկախության և ազատության հիմքերի կառուցման համար մոբիլիզացնելու իր բարոյական ու ֆիզիկական ուժերը և իր սեփականու-

թյունը... Բոլորդ, ում երակներում հոսում է կխմերական արյունը— ոտքի ելեք պայքարելու ֆրանսիական գաղութարարների դեմ, հանուն հայրենիքի ազատության և անկախության»:

1950 թվականի մայիսին դիմադրության կառավարության շուրջը միավորվեցին երկրի բոլոր դեմոկրատական ուժերը, կազմելով Միասնական ազգային ճակատ (Նեկում Կխմեր, Իսսարակ), որի մեջ մտնում է մոտ մեկ միլիոն մարդ:

Կխմերի դիմադրության կառավարությունը միջոցներ է ձեռք առել երկրում ստեղծելու դեմոկրատական իշխանության օրգաններ, կառուցելու ազգային էկոնոմիկայի հիմքերը և բարձրացնելու ժողովրդի կենսամակարդակը: Արտադրանքի թողարկման ավելացման համար Կխմերի դեմոկրատական կառավարության նախաձեռնությամբ ծավալված շարժումը լայն արձագանք գտավ աշխատավորների մեջ: Մեծ աշխատանք է տարված ժողովրդական կրթության ասպարեզում: Երկրի ազատագրված շրջաններում բացվել են բազմաթիվ դպրոցներ: Մի շարք շրջաններում բնակչության երկու երրորդը այժմ արդեն գրագետ է դարձել, այն դեպքում, երբ ֆրանսիական տիրապետության ժամանակ գրագետներ համարյա չկային:





# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆԵՐԸ ԱՇԽԱՐՀՈՒՄ

1917 թվականի սկզբներին ամբողջ աշխարհում կոմունիստների ընդհանուր թիվը կազմում էր մի քանի տասնյակ հազար մարդ։ Առաջին իմպերիալիստական պատերազմի ավարտման առաջին տարիներին կոմունիստական պարտիաներ կային միայն առանձին երկրներում, իսկ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, երկրագնդի վրա չկա այլևս մի երկիր, որտեղ կոմունիստական շարժում չլինի։ Ներկայումս բոլոր երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների շարքերում կա մոտ 25 միլիոն մարդ։

1917 թվականի փետրվարին, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի օրերին Ռուսաստանում բոլշևիկյան պարտիայի անդամների թիվը հասնում էր 45 հազարի։ 1952 թվականի հոկտեմբերի մեկի տվյալներով Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր շարքերում ունի 7 միլիոն անդամ և թեկնածու։

Չինաստանի Կոմունիստական պարտիան իր շարքերում ունի 6,5 միլիոն մարդ, Չեխոսլովակիայի կո-



մունիստական պարտիան՝ 1 միլիոն 600 հազար, Լեհական բանվորական միացյալ պարտիան՝ համարյա 1 միլիոն 300 հազար, Հունգարական աշխատավորական պարտիան—մոտ 900 հազար, Բուլղարական կոմունիստական պարտիան՝ ավելի քան 455 հազար, Ալբանիայի աշխատանքի պարտիան՝ մոտ 45 հազար, Կորեայի աշխատանքային պարտիան՝ ավելի քան մեկ միլիոն մարդ և այլն։ Գերմանական Սոցիալիստական միասնական պարտիան իր շարքերում ունի ավելի քան 1 միլիոն 400 հազար մարդ։ Վյետնամի աշխատավորական պարտիայի անդամների թիվն անցնում է 700 հազարից։ Կոմունիստական և բանվորական պարտիաները հանդիսանում են սոցիալիստական հզոր լագերը կազմող երկրների ղեկավար և ուղղություն տվող ուժը, որտեղ բնակչության ընդհանուր թիվը կազմում է 800 միլիոն մարդ։

Ֆրանսիայի և Իտալիայի կոմունիստական պարտիաները արտասահմանում ամենաբազմամարդ, միասնական և ուժեղ պարտիաներ են։ Ֆրանսիայի կոմունիստական պարտիան ունի 800 հազար անդամ, իսկ Իտալիայի կոմունիստական պարտիան՝ 2 միլիոն 120 հազար անդամ։

Կապիտալիստական և գաղութային շատ երկրներում կոմունիստական պարտիաներն աշխատում են ընդհատակում՝ Իսպանիայում, Փորթուգալիայում, Հունաստանում, Հարավսլավիայում, Եգիպտոսում, Լիվիայում, Հարավ-Աֆրիկական միությունում, Համար-

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆԵՐՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

1917 թվականի սկզբներին ամբողջ աշխարհում կոմունիստների ընդհանուր թիվը կազմում էր մի քանի տասնյակ հազար մարդ։ Առաջին իմպերիալիստական պատերազմի ավարտման առաջին տարիներին կոմունիստական պարտիաներ կային միայն առանձին երկրրներում, իսկ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, երկրագնդի վրա չկա այլևս մի երկիր, որտեղ կոմունիստական շարժում չլինի։ Ներկայումս բոլոր երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների շարքերում կա մոտ 25 միլիոն մարդ։

1917 թվականի փետրվարին, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի օրերին Ռուսաստանում բոլշևիկյան պարտիայի անդամների թիվը հասնում էր 45 հազարի։ 1952 թվականի հոկտեմբերի մեկի տվյալներով Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր շարքերում ունի 7 միլիոն անդամ և թեկնածու։

Չինաստանի Կոմունիստական պարտիան իր շարքերում ունի 6,5 միլիոն մարդ, Չեխոսլովակիայի կո-



մունիստական պարտիան՝ 1 միլիոն 600 հազար, Լեհական բանվորական միացյալ պարտիան՝ համարյա 1 միլիոն 300 հազար, Հունգարական աշխատավորական պարտիան—մոտ 900 հազար, Բուլղարական կոմունիստական պարտիան՝ ավելի քան 455 հազար, Ալբանիայի աշխատանքի պարտիան՝ մոտ 45 հազար, Կորեայի աշխատանքային պարտիան՝ ավելի քան մեկ միլիոն մարդ և այլն։ Գերմանական Սոցիալիստական միասնական պարտիան իր շարքերում ունի ավելի քան 1 միլիոն 400 հազար մարդ։ Վյետնամի աշխատավորական պարտիայի անդամների թիվն անցնում է 700 հազարից։ Կոմունիստական և բանվորական պարտիաները հանդիսանում են սոցիալիստական հզոր լագերը կազմող երկրների ղեկավար և ուղղություն տվող ուժը, որտեղ բնակչության ընդհանուր թիվը կազմում է 800 միլիոն մարդ։

Ֆրանսիայի և Իտալիայի կոմունիստական պարտիաները արտասահմանում ամենաբազմամարդ, միասնական և ուժեղ պարտիաներ են։ Ֆրանսիայի կոմունիստական պարտիան ունի 800 հազար անդամ, իսկ Իտալիայի կոմունիստական պարտիան՝ 2 միլիոն 120 հազար անդամ։

Կապիտալիստական և գաղութային շատ երկրներում կոմունիստական պարտիաներն աշխատում են ընդհատակում։ Իսպանիայում, Փորթուգալիայում, Հունաստանում, Հարավսլավիայում, Եգիպտոսում, Լիվիայում, Հարավ-Աֆրիկական միությունում, համար-

յա Աֆրիկական բոլոր գաղութներում և Լատինական Ամերիկայի երկրներում արգելված են կոմունիստական պարտիաները։ Տեռորի և հետապնդման ծանր պայմաններում են աշխատում ԱՄՆ-ի, Ճապոնիայի, Պակիստանի, Ավստրալիայի, Արևմտյան Գերմանիայի կոմունիստական պարտիաները։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Ճապոնիայում, Բրազիլիայում, Հունաստանում հրամաններ են տրված կոմպարտիաների ղեկավարներին բանտարկելու և դատապարտելու մասին։ Մի շարք կապիտալիստական երկրներում հազարավոր կոմունիստներ նստած են բանտերը, կոմպարտիաների ղեկավարների նկատմամբ կազմակերպվում են մահափորձեր։

1948—1950 թ. թ. տվյալներով կապիտալիստական առանձին երկրների կոմպարտիաների թիվը կազմում էր՝ ԱՄՆ-ում—60 հազար, Ճապոնիայում՝ 100 հազար, Բելգիայում՝ 100 հազար, Հոլանդիայում՝ 50 հազար, Դանիայում՝ 50 հազար, Ֆինլանդիայում՝ 50 հազար, Շվեդիայում՝ 60 հազար, 1953 թվի տվյալներով Անգլիայում՝ 35 հազար, Հնդկաստանում՝ 60 հազար մարդ։

Ո՛չ կեղծ պրոպագանդան, ո՛չ էլ դաժանությունն ու հետապնդումները չեն կարող կանգնեցնել կոմունիստական շարժման զարգացումը կապիտալիստական երկրներում։ Աշխատավորները կոմունիստներին նայում են, որպես ժողովրդի հարազատ զավակների, իրենց ամենօրյա շահերի պաշտպանների, ժողովրդ-



ներին կապիտալի կապանքներից ազատագրելու համար, անկախության, ազատության, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարի մարտիկների։ Տարեցտարի ուժեղանում է կոմունիստների ազդեցությունն անպարտիական աշխատավորական մասսաների վրա, անընդհատ աճում է կոմունիստների ղեկավար դերը պրոֆմիութենական, կանանց և երիտասարդական կազմակերպություններում։ Կոմունիստները գլխավորում են խաղաղության համար պայքարը՝ ամբողջ աշխարհում։

Պրոգրեսիվ ուժերի աճի մասին են խոսում հետևյալ տվյալները՝ Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիան միավորում է 64 երկրների ավելի քան 80 միլիոն բանվորների, ծառայողների, բատրակների և այլ աշխատողների, Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիան միավորում է 66 երկրների 140 միլիոն անդամներ, Երիտասարդության միջազգային դեմոկրատական ֆեդերացիան միավորում է 87 երկրների 75 միլիոն երիտասարդ տղաների ու աղջիկների, որոնք ակտիվ կերպով պայքարում են հանուն տևական և կայուն խաղաղության։

---

# ՈՒՂՂՈՒՄ

«Ագիտատորի բլոկնոտ»-ի 1954 թ. № 11-ի 48-րդ էջի երկրորդ պարբերության առաջին տողերը պետք է կարդալ. «1952 թվականի մայիսի 27-ին, Փարիզում, ԱՄՆ-ի ճնշմամբ Արևմտյան Գերմանիայի...»: Այնուհետև կարդալ, այնպես, ինչպես տեքստումն է:

---


**Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№12 1954 г.**

ՎՖ 10450 Պատվեր 541 Տիրաժ 8300

Գլխպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան
Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.: